Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ




№ 11 ՀՈՒՆԻՍ 1957

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։





# ՍՍՌՄ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԱՆԽԱԽՏ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՄԵԾԱԳՈՒՅՆ ՆՎԱՃՈՒՄՆ Է

Բ. ԼԱԼԱԲԵԿՅԱՆ

1917 թվականի հոկտեմբերին մեր երկրի բանվոր դասակարգը աշխատավոր գյուղացիության օգնությամբ տապալեց կալվածատերերի ու կապիտալիստների տիրապետությունը և ստեղծեց աշխարհում առաջին Սովետական պետությունը։ Ռուսական պրոլետարիատի հոկտեմբերյան հաղթանակով նոր դարագլուխ սկսվեց մարդկության համաշխարհային պատմության մեջ։ Հոկտեմբերյան ռևոլյուցիան արմատական հեղաշրջում առաջ բերեց ժողովուրդների տնտեսական ու քաղաքական կյանքում, մարդկանց մտավոր ու հոգևոր աշխարհում։ Հոկտեմբերը ազգերի ու ժողովուրդների անիրավահավասարության, ռասսայական խտրականության բուրժուական-նացիոնալիստական իդեոլոգիային հակադրեց մեծ ու փոքր ժողովուրդների, տարբեր







ազգերի իրավահավասարության, խաղաղ համակեցության և եղբայրության ինտերնացիոնալիստական իդեոլոգիան։ Մարդկության պատմության մեջ առաջին անգամ, ճնշված ու հալածված ժողովուրդները բարձրացան իբրև ազատ, իբրև հավասար ժողովուրդների դրությամբ։ Փոքր ու մեծ ժողովուրդների, տարբեր ազգերի իրավահավասարության սկզբունքը պաշտպանություն գտավ Սովետական կառավարության հաշտության մասին դեկրետում, որը հրապարակվեց 1917 թվականի հոկտեմբերի 26-ին։ Այդ դեկրետով Սովետական կառավարությունը առաջարկեց կռվող երկրներին բոլոր զորքերը դուրս բերել ուժով գրաված տերիտորիաներից և այդ երկրների ժողովուրդներին տալ ինքնորոշման իրավունք։

Ազգերի միջև ճիշտ փոխհարաբերություններ ստեղծելու, նրանց սոցիալիստական ռևոլյուցիայի մեջ ներգրավելու համար Լենինի առաջարկությամբ Սովետների Համառուսական երկրորդ համագումարը Սովետական կառավարության կազմում ստեղծեց ազգությունների Գործերի ժողովրդական Կոմիսարիատ, որի հիմնական խնդիրն էր՝ օգնել Ռուսաստանում ապրող բոլոր ժողովուրդներին ու ազգերին ձեռք բերելու ազատություն



և անկախություն, ապահովել այդ ազգերի ու ժողովուրդների խաղաղ համակեցությունը և եղբայրական համագործակցությունը։

Փոքր ազգերի ու ժողովուրդների ազատության ու անկախության սովետական քաղաքականությունը իր վառ արտահայտությունը գտավ նաև «Ռուսաստանի և Արևելքի բոլոր աշխատավոր մուսուլմաններին» ուղղված դիմումում, «Թուրքահայաստանի մասին» դեկրետում և մի շարք այլ փաստաթղթերում։

Նախկինում ճնշված ու հալածված փոքր ազգերի ու ժողովուրդների նկատմամբ լենինյան հոգատարության փայլուն օրինակ էր «Թուրքահայաստանի մասին» Ժողովրդական Կոմիսարների Սովետի դեկրետը, որը հրապարակվեց 1917 թվականի դեկտեմբերին։

Հայ ժողովրդի ճակատագրի համար շատ կարևոր նշանակություն ունեցող այս փաստաթղթի մեջ Սովետական կառավարությունը մերկացնելով արևմտյան «քաղաքակիրթ» տերությունների դիվանագիտական մարզանքների էությունը հայտարարեց, որ Ռուսաստանի կողմից «պատերազմի իրավունքով գրաված «Թուրքահայաստանի բնակչությանը իրավունք է վերապահվում ազատ կերպով ինքնորոշվելու, ընդհուպ մինչև իր

ազգային անկախ պետության ստեղծումը։ Սովետական կառավարությունը հանձնարարեց Կովկասյան Գործերի Ժամանակավոր Կոմիսար Ստեփան Շահումյանին ամեն տեսակի օժանդակություն ցույց տալ հայ ժողովրդին դեկրետում առաջադրված խնդիրները կատարելու համար։ Բայց դժբախտաբար այս դեկրետը չիրականացավ, որովհետև Անդրկովկասի բուրժուա-նացիոնալիստական պարտիաների կոալիցիան Անդրկովկասը անջատեց Սովետական Ռուսաստանից և հնարավորություն տվեց թուրքական նվաճողներին վրեժխնդիր լինել ոչ միայն Արևմտյան Հայաստանի հայ բնակչության նկատմամբ, այլև ներխուժել Արևելյան Հայաստան և անհամար տառապանքներ պատճառել նաև Հայաստանի այդ հատվածի բնակչությանը, որը իր ազատությունը ձեռք բերեց միայն Հոկտեմբերյան ռևոլյուցիայի շնորհիվ։

Վ. Ի. Լենինի պահանջով նորաստեղծ սովետական ռեսպուբլիկաներին մեծ օգնություն ցույց տրվեց։ Անդրկովկասյան սովետական ռեսպուբլիկաները սովետացման առաջին տարում Ռուսաստանից ստացան մոտ 2 միլիոն փութ հացահատիկ, 170 վագոն ձկնեղեն, 120 վագոն շաքար, մի քանի մի-



լիոն արշին մանուֆակտուրա, մեծ քանակությամբ հագուստեղեն, թուղթ, գրականություն, մի քանի տպարաններ իրենց սարքավորումներով և այլն։ Սովետական Ռուսաստանը նույնպիսի օգնություն ցույց տվեց նաև մյուս ժողովուրդներին։

Սովետական ռեսպուբլիկաների փոխադարձ օգնությունը, նրանց տնտեսական, քաղաքական, կուլտուրական կապերի ընդլայնումը, նրանց պայքարի ու աշխատանքի նպատակների նույնությունը է՛լ ավելի ամրապնդեց այդ ռեսպուբլիկաների ժողովուրդների ինտերնացիոնալ կապերը և բարեկամությունը։

Սովետական շինարարության առաջին տարիների պրակտիկան ցույց տվեց, որ տնտեսապես հետամնաց, ռազմական տեսակետից թույլ ծայրամասային ժողովուրդները, առանց ռուս մեծ ժողովրդի հետ ռազմա-քաղաքական դաշինքի մեջ մտնելու չեն կարող պաշտպանել իրենց անկախությունը, հաղթահարել իրենց տնտեսական ու կուլտուրական հետամնացությունը։ Կյանքն ինքն էր պահանջում միացնել սովետական ռեսպուբլիկաների բոլոր ուժերն ու միջոցները և ռացիոնալ կերպով օգտագործել այդ միջոցները բոլոր ռեսպուբլի-

կաների ժողովրդական տնտեսությունն ու կուլտուրան առաջ մղելու համար։

Սովետական ռեսպուբլիկաների այդ տնտեսական ու քաղաքական միավորումը ձևակերպվեց 1922 թվականի դեկտեմբերին Սովետների Համամիութենական առաջին համագումարում։ Այդ օրը դարձավ սովետական բազմազգ պետության ստեղծման պատմական օր, հին Ռուսաստանի դեմ նոր Ռուսաստանի տարած հաղթանակի օր, նացիոնալիզմի դեմ ինտերնացիոնալիզմի տարած հաղթանակի օր։

Բազմազգ Սովետական պետությունը իր գոյության հենց սկզբից իր առջև խնդիր դրեց լիկվիդացնել անցյալում ճնշված ու հետամնաց փոքր ժողովուրդների տնտեսական, կուլտուրական հետամնացությունը, նրանց հասցնել Կենտրոնական Ռուսաստանի զարգացման մակարդակին և նրանց միջև ստեղծել փաստական հավասարություն։ Այդ դժվարին խնդիրը լուծելու համար, պետական բյուջեով ծայրամասերին հատկացվեցին հսկայական գումարներ, արդյունաբերական և կուլտուրական կենտրոններ ստեղծելու համար։ Ինդուստրացման լենինյան քաղաքականությունը դարձավ ազգային սովետական ռեսպուբլիկաների տնտեսական



ու կուլտուրական հետամնացությունը վերացնելու գլխավոր միջոցը։ Կոմունիստական պարտիան իր մի շարք համագումարներում կարևոր որոշումներ ընդունեց ազգային ծայրամասերում արագ թափով սովետական շինարարություն ծավալելու մասին։

Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության այդ միջոցառումների շնորհիվ պատմական կարճ ժամանակամիջոցում ազգային ռեսպուբլիկաներում կառուցվեցին հազարավոր արտադրական ձեռնարկություններ, բացվեցին բազմաթիվ դպրոցներ, բարձրագույն ուսումնական հաստատություններ, հարյուրավոր գիտահետազոտական ինստիտուտներ ու հիմնարկներ։ Սովետական մի շարք ռեսպուբլիկաներ ոչ միայն հասան, այլև անցան Եվրոպայի մի շարք առաջավոր երկրներից։

Ազգային ռեսպուբլիկաներում ստեղծված ինդուստրիան հնարավորություն տվեց խորը վերափոխումներ մտցնել նաև գյուղատնտեսության մեջ։ Այժմ սովետական բոլոր ռեսպուբլիկաներում մենք ունենք ժամանակակից տեխնիկայով հագեցված գյուղատնտեսություն, որը մեր արդյունաբերությանը տալիս է բավարար քանակությամբ հումք, իսկ բնակչությանը կենսամթերքներ։

Ազգային ռեսպուբլիկաների էկոնոմիկայի աննախընթաց վերելքը բնորոշող փաստերը ցույց են տալիս, որ ռեսպուբլիկաների արդյունաբերության համախառն արտադրանքը ավելի արագ է աճել, քան ամբողջ միության արդյունաբերությունը։

Այժմ Ղազախական ՍՍՌ արդյունաբերության համախառն արտադրանքը 1913 թվականի համեմատությամբ, աճել է 36 անգամ, Վրացական ՍՍՌ-ում՝ 30 անգամ, Կիրգիզական ՍՍՌ-ում՝ 42 անգամ, Հայկական ՍՍՌ-ում՝ 45 անգամ, Տաջիկական ՍՍՌ-ում՝ 27 անգամ։ Սովետական ազգային ռեսպուբլիկաներում աճել են ինտելիգենցիայի հիանալի կադրեր, որոնք օգտագործելով հայրենական և արտասահմանյան գիտության նվաճումները, համարձակ կերպով առաջ են մղում սովետական գիտությունն ու տեխնիկան։ Միայն նախապատերազմյան շրջանի համեմատությամբ բարձրագույն կրթություն ունեցող մասնագետների թիվը Ղազախստանում ավելացել է՝ 3,8 անգամ, Կիրգիզիայում՝ 4,8 անգամ, Տաջիկստանում և Մոլդավիայում՝ 3,4 անգամ, Թուրքմենիայում՝ 3,3 անգամ, Էստոնիայում մոտ 3 անգամ։ Նույն ժամանակաշրջանում գիտական աշխատողների թիվը



Ուկրաինայում ավելացել է 1,5 անգամ, Լատվիայում և Ադրբեջանում՝ ավելի քան 2 անգամ, Էստոնիայում՝ մոտ 3 անգամ, Հայաստանում՝ ավելի քան 3 անգամ և այլն։ Այս բոլորը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռեվոլյուցիայի նվաճումներն են։ Այս նվաճումները պայմաններ ստեղծեցին ընդլայնելու միութենական ռեսպուբլիկաների իրավունքները։

Մեր պարտիայի XX համագումարը անհրաժեշտ համարեց ազգային ռեսպուբլիկաների հեղինակավոր ներկայացուցիչներից ՍՍՌՄ-ի Ազգությունների Սովետին կից ստեղծել տնտեսական հանձնաժողով, որը պետք է մանրամասնորեն ուսումնասիրի ռեսպուբլիկաների էկոնոմիկան, այս կամ այն գյուղատնտեսական կուլտուրայի արմատավորման անհրաժեշտությունը ռեսպուբլիկաներում, պարզի թե, որ ռեսպուբլիկայում արդյունաբերության ինչպիսի ճյուղ կարելի է զարգացնել։ Այդ ուսումնասիրությունների հիման վրա պետք է մշակվեն համապատասխան առաջարկություններ, որոնք ռեսպուբլիկաներում քննվելուց և ընդունվելուց հետո միայն պետք է հանձնվեն համապատասխան օրենսդիր և գործադիր օրգաններին։ Համագումարը պահանջեց

միութենական ռեսպուբլիկաների դերն ու հեղինակությունը բարձրացնել նաև բյուջետային հարցերում։

Ազգային ռեսպուբլիկաների իրավունքների ընդլայնումը, նրանց դերի ու հեղինակության բարձրացումը չի կարող բացառել կենտրոնացված պլանային սկզբունքը։ Այդ սկզբունքը եղել է և մնում է որպես տնտեսության սոցիալիստական սիստեմի մեծագույն առավելությունը։ Սոցիալիստական տնտեսության միասնական ճիշտ պլանավորումը, դա նախ և առաջ նշանակում է ուշադիր կերպով հաշվի առնել ազգային ռեսպուբլիկաների պահանջները, նրանց տնտեսության և կուլտուրայի զարգացման շահերը, նրանց տնտեսական ու ազգային առանձնահատկությունները։

Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն և Սովետական կառավարությունը հետևողականորեն կենսագործելով XX համագումարի որոշումները, կիրառեցին մի շարք կարևոր միջոցառումներ ազգային ռեսպուբլիկաների իրավունքներն ընդարձակելու համար։ Ռեսպուբլիկաների իրավասությանը հանձնվեցին ավելի քան 15 հազար արդյունաբերական ձեռնարկություն, գետային և ավտոմոբիլային տրանսպորտը։ Տնտեսական և կուլտու-



րական միջոցառումների հատկացումներ կատարելու իրավունքներ տրվեցին միութենական ռեսպուբլիկաների կառավարություններին։

Արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումն է՛լ ավելի կատարելագործելու միջոցառումների մասին ՍՍՌՄ Գերագույն Սովետի յոթերորդ սեսիայի որոշումները նոր հեռանկարներ են բացում ազգային ռեսպուբլիկաների, տնտեսության ու կուլտուրայի զարգացման, նրանց ինքնուրույն նախաձեռնության համար։ Կառավարման այդ նոր սկզբունքների համաձայն, տեղական ռեսպուբլիկական կազմակերպություններն ու օրգանները ելնելով համապետական շահերից կմշակեն իրենց ռեսպուբլիկաների տնտեսական շինարարության պլանները, գործնական աշխատանք կծավալեն այդ պլաններն ու միջոցառումները ժամանակին կատարելու համար, ակտիվ կերպով կմասնակցեն արտադրողական ուժերի տեղաբաշխմանը, ռեսպուբլիկաների տնտեսության մասնագիտացմանը։ Ռեսպուբլիկաների իրավունքների ընդլայնումը հնարավորության կտա տեղական պարտիական ու սովետական օրգաններին հաշվի առնել իրենց ռեսպուբլիկայի

աշխարհագրական, տնտեսական և ազգային առանձնահատկությունները և ավելի ճիշտ կերպով լուծել տվյալ տնտեսական շրջանի կոմպլեքսային զարգացումը։

Պարտիայի և կառավարության այս կարևոր միջոցառումների մեջ վառ կերպով արտահայտվում է սովետական ժողովուրդների ազգային և ինտերնացիոնալ շահերի միասնությունը։

Պատմական զարգացման նոր պայմաններին համապատասխան ազգային փոխհարաբերություններին վերաբերող հարցերի ճիշտ, ստեղծագործաբար լուծումը կարևոր նշանակություն ունի նաև սոցիալիզմի ամբողջ լագերի երկրների հետ ճիշտ փոխհարաբերություններ ստեղծելու համար։

Սովետական բազմազգ պետության փորձով ստուգված պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները այժմ դրված են սոցիալիզմի համաշխարհային սիստեմի մեջ մտնող բոլոր պետությունների փոխհարաբերությունների հիմքում։ Այդ պետությունների ինտերնացիոնալ համախմբվածությունը, նրանց միասնությունը սոցիալիզմի լագերի անպարտելիության գրավականն է, ամբողջ աշխարհում պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարների հաղթանակի գրավականը։

---

# ԱՐԺԱՆԱՎԱՅԵԼ ԴԻՄԱՎՈՐԵՆՔ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 40-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

Վ. ԿՈՐՈՏԿՈՎ
ՀԿՊ Կենտկոմի արդյունաբերության և տրանսպորտի բաժնի վարիչի տեղակալ

Մոտենում է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի քառասունամյա տարեդարձը՝ մարքսիզմ-լենինիզմի գաղափարների հաղթության համաժողովրդական տոնը։

Անցյալում քայքայված, հետամնաց մեր երկիրը Սովետական Միության Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ պատմական կարճ ժամանակամիջոցում ընդմիշտ թոթափեց իր դարավոր տնտեսական ու կուլտուրական հետամնացությունը, կառուցեց սոցիալիզմ, դարձավ առաջավոր տեխնիկայի, գիտության երկիր և իր արդյունաբերական արտադրության մակարդակով դուրս եկավ աշխարհում երկրորդ տեղը։

Նախառևոլյուցիոն շրջանի համեմատու-

թյամբ ՍՍՌՄ արդյունաբերությունը 1957 թվականին աճեց ավելի քան 30 անգամ, իսկ արտադրության միջոցների արտադրությունը՝ 67 անգամ, էլեկտրաէներգիայի արտադրությունն աճեց դրեթե 100 անգամ, մեքենաշինության արտադրանքի թողարկումըն ավելացավ 180 անգամ։

Կոմունիստական պարտիան հետևողականորեն ու հաստատակամությամբ կենսագործել և կենսագործում է լենինյան ազգային քաղաքականությունը, ամենօրյա հոգատարություն է ցուցաբերում միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների, ՍՍՌՄ բոլոր ազգերի ու ժողովուրդների էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացման նկատմամբ։ Հին Ռուսաստանի նախկինում ճընշված ու հետամնաց ազգերը սովետական իշխանության տարիներին, ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական սերտ համագործակցությամբ, մեծ հաջողություններ ձեռք բերեցին իրենց էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման ասպարեզում։

Այդ բանի վառ արտահայտություն կարող են լինել մեր ռեսպուբլիկայի հաջողությունները։

Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերու-



թյան համախառն արտադրանքը 1957 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, ավելացավ 45 անգամ, ռեսպուբլիկայում կան ավելի քան 580 ձեռնարկություններ, որոնք տարեկան թողարկում են 6,5 միլիարդ ռուբլու արտադրանք։ Ստեղծվել են արդյունաբերության այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են՝ լեռնամետալուրգիականը, քիմիականը, մեքենաշինականը, հաստոցաշինականը, էլեկտրատեխնիկականը, ռադիոտեխնիկականը, գործիքաշինականը, շինանյութերինը, թեթև և սննդի արդյունաբերությանը։

Վեցերորդ հնգամյա պլանի դիրեկտիվների համաձայն Հայկական ՍՍՌ ամբողջ արդյունաբերությունը պետք է աճի մոտավորապես 1,7 անգամ։ 1960 թվականին արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալը կազմելու է 9 միլիարդ 273 միլիոն ռուբլի։

1956 թվականին Հայկական ՍՍՌ-ն արդյունաբերության համախառն արտադրանքի պլանը կատարեց 103,7 տոկոսով։ 1956 թվականին ռեսպուբլիկայի ձեռնարկությունները յուրացրին արտադրանքի ավելի քան 100 տեսակների արտադրությունը։

1956 թվականին, 1955 թվականի համե-

մատուցմամբ, ավելի է արտադրվել՝ ավտոդողեր՝ 35 տոկոսով, տրանսֆորմատորներ՝ 43 տոկոսով, էլեկտրաշարժիչ գործիքներ՝ 2,8 անգամ, էլեկտրալամպեր՝ 29 տոկոսով, զարթնեցնող ժամացույցներ՝ 40 տոկոսով, ավտոպահեստամասեր՝ 27 տոկոսով, բրդե գործվածքներ՝ 23 տոկոսով, կահույք՝ 16 տոկոսով, պահածոներ՝ 27 տոկոսով, անարատ կաթնամթերքներ՝ 19 տոկոսով։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձի պատվին ռեսպուբլիկայի բոլոր ձեռնարկություններում լայն սոցիալիստական մրցություն է ծավալվել պարտիայի XX համագումարի պատմական որոշումները հաջողությամբ կենսագործելու, վեցերորդ հնգամյակի երկրորդ տարվա պլանները ժամկետից շուտ և բարձր ցուցանիշներով կատարելու համար։

Ռեսպուբլիկան պարտավորություն է ընդունել արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկման տարեկան պլանը կատարել ժամկետից շուտ՝ 1957 թվականի դեկտեմբերի 25-ին։

Պարենային ապրանքների արդյունաբերության մինիստրությունը պարտավորություն է ստանձնել համախառն արտադրանքի տարեկան պլանը կատարել 1957 թվա-



կանի դեկտեմբերի 20-ին և պլանից դուրս տալ 30 միլիոն ռուբլու արտադրանք։ Հումքի, նյութերի տնտեսման և անարտադրողական ծախսերի կրճատման հաշվին, սահմանված պլանից դուրս տալ մեկ միլիոն ռուբլու տնտեսում։ Աշխատանքի արտադրողականությունը պլանից դուրս բարձրացնել մեկ տոկոսով։ Արտադրության հիմնական տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման համար ապահովել նոր սարքավորման երկու հարյուր միավորների արմատավորումը ձեռնարկություններում։ Մինչև 1957 թվականի նոյեմբերի 7-ը շահագործման հանձնել Արզնիի ապակե տարայի գործարանի նոր կորպուսը, տեղադրելով ապակու կաղապարման երկրորդ ագրեգատը՝ տարեկան 100 միլիոն 22ի արտադրական կարողությամբ։ Ապահովել արտադրանքի նոր տեսակների՝ «Տոնական» կոնյակի, «Գառնի», «Վալվարի» կիսաքաղցր գինիների յուրացումն ու թողարկումը։ Հրուշակի արդյունաբերության գծով թողարկել հինգ ձևի նոր թխվածքներ, յոթ ձևի նոր տորթ ու կարկանդակ և ութ ձևի նոր հրուշակեղեն։

Թեթև արդյունաբերության մինիստրությունը պարտավորվել է տարեկան պլանը





կատարել 1957 թվականի դեկտեմբերի 25-ին և տալ 30 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք։ Նոր տեխնիկայի արմատավորման, եղած արտադրողական կարողությունների առավելագույն օգտագործման հաշվին աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը գերակատարել մեկ տոկոսով, շահույթների պլանը՝ երկու տոկոսով։ 1957 թվականի ընթացքում յուրացնել և թողարկել արտադրանքի նոր տեսակներ՝ ամառային կրեպ-ժորժետ, «Նաիրի» կովերկոտ, «Մասիս» տրիկո, «Սևան» տրիկո, «Երևան» և «Հրազդան» մահուդ, սատին, «Մերսեր» գուլպաներ և այլն։

Մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության մինիստրությունը պարտավորվել է տարեկան պլանը կատարել 1957 թվականի դեկտեմբերի 20-ին, թողարկել երշիկեղենի երկու նոր տեսակներ, 3000 տոննայով ավելացնել անարատ կաթից պատրաստվող մթերքների արտադրությունը մանր փաթեթներով։ Եղջյուրներից, ոսկորից և կճղակներից պատրաստել 200 հազար ռուբլու սպառման առարկաներ։

Քաղաքային և գյուղական շինարարության մինիստրությունը պարտավորվել է շինարարական-մոնտաժային աշխատանք-



ների տարեկան պլանը կատարել 1957 թվականի նոյեմբերի 29-ին, ինչպես նաև գերակատարել շինարարական աշխատանքների արժեքի իջեցման և աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը։

Համախառն արտադրանքի տարեկան պլանները ժամկետից շուտ կատարելու, ինքնարժեքն իջեցնելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, արտադրանքի որակը բարելավելու և արտադրանքի նոր տեսակներ թողարկելու պարտավորություններ են ստանձնել նաև տեղական, անտառային, շինանյութերի արդյունաբերության մինիստրությունները և Հայարդխորհուրդը։

Բարձր պարտավորություններ են ստանձնել ռեսպուբլիկայի առաջատար գործարանները։

Կիրովցիները պարտավորվել են համախառն ու ապրանքային արտադրանքի և ասորտիմենտի բոլոր տեսակների տարեկան պլանը կատարել 1957 թվականի դեկտեմբերի 23-ին, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 2 տոկոսով, տնտեսել 300 տոննա հումք, 500 տոննա վառելիք և 800 կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ Ռացիոնալիզատորական առաջարկնե-

րի արմատավորման միջոցով տալ 4,5 միլիոն ռուբլու տնտեսում: Պատրաստել և վերաորակավորել 500 բանվորներ ու ինժեներա-տեխնիկական աշխատողներ: Շահագործման հանձնել 3100 քառ. մետր բնակելի տարածություն:

Հայէլեկտրո գործարանը պարտավորություն է ստանձնել համախառն և ապրանքային արտադրանքի տարեկան պլանը՝ տեխնիկա-տնտեսական բոլոր ցուցանիշներով, կատարել մինչև 1957 թվականի դեկտեմբերի 20-ը և պլանից դուրս տալ 10 միլիոն ռուբլու արտադրանք: Շահագործման հանձնել 7500 քառ. մետր արտադրական տարածություն ունեցող մի նոր ցեխ: Յուրացնել երեք տիպի նոր կոմպլեքսային տրանսֆորմատորային ենթակայանների, համամիութենական միասնական սերիայի առաջին գաբարիտի տրանսֆորմատորների, ԴԷՍ—50 և ԴԷՍ—30 մոդեռնացված էլեկտրակայանների թողարկումը, մեքենայացնել և շահագործման հանձնել հինգ կոնվեյերային և հոսքա-տեխնոլոգիական գծեր:

Ավտոդողերի գործարանը պարտավորվել է տարեկան պլանը կատարել ժամկետից շուտ և միաժամանակ տնտեսված հումքի և նյութերի հաշվին պլանից դուրս



արտադրել 7000 ավտոդող: Աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 7 տոկոսով, տեղադրել նոր սարքավորումներ, վերաորակավորել 310 բանվոր, շահագործման հանձնել 800 քառ. մետր բնակելի տարածություն:

Ալյումինի գործարանը պարտավորվել է համախառն արտադրանքի պլանը կատարել 101,5 տոկոսով և մետաղի արտադրության պլանը՝ 101 տոկոսով, տնտեսել 2 միլիոն ռուբլու հումք և տալ մեկ միլիոն ռուբլու գերպլանային շահույթ: Ավարտել և գործարկման հանձնել գազակլանիչ սարքավորումը և ռեգեներացիայի բաժանմունքը: Շահագործման հանձնել 3300 քառ. մետր բնակելի տարածություն, ակումբը, պրոֆիլակտորիան և պիոներական ճամբարը:

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձի պատվին ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցության շնորհիվ, որի մեջ են ընդգրկվել նաև արդյունաբերության բոլոր աշխատողները, ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի 1957 թվականի չորս ամսվա պլանը կատարվել 101,9 տոկոսով:

Պարենային ապրանքների արդյունաբե-

րության մինիստրությունը չորս ամսվա պլանը կատարեց 101,9 տոկոսով, Մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության մինիստրությունը՝ 102,8 տոկոսով, Թեթև արդյունաբերության մինիստրությունը՝ 101,9 տոկոսով, Տեղական արդյունաբերության մինիստրությունը՝ 100,9 տոկոսով, Անտառային արդյունաբերության մինիստրությունը՝ 108,6 տոկոսով, Հայարդխորհուրդը՝ 104 տոկոսով։

Ռեսպուբլիկայի ձեռնարկությունները պատվով են կատարում իրենց ստանձնած պարտավորությունները։ Այսպես, Երևանի ավտոդողերի գործարանը չորս ամսվա համախառն արտադրանքի պլանը կատարել է 103,2 տոկոսով, տնտեսել է 19 տոննա կաուչուկ, 3,5 հազար քառ. մետր գործվածքեղեն, 23600 կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ Գործարանը տվել է 1 միլիոն 378 հազար ռուբլու շահույթ։ Իրենց պարտավորությունները լավ են կատարում ընկ. ընկ. Մ. Զալիկյանի, Ա. Ալեքսանյանի, Կ. Ասլանյանի, Բ. Բիշյանի, Վ. Հակոբյանի, Մ. Գրիգորյանի բրիգադաները, որոնք չորս ամսվա պլանը կատարել են 116—146 տոկոսով։

Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանը համախառն արտադրանքի չորս ամսվա



պլանը կատարել է 101,6 տոկոսով, գերակատարել է աշխատանքի արտադրողականության բարձրացման և ինքնարժեքի իջեցման պլանները։ Ռացիոնալիզատորական առաջարկների արմատավորումից տնտեսվել է 900 հազար ռուբլի։ Միջցեխային մրցության մեջ առաջին տեղը գրավել է 30—30ա ցեխը (ցեխի պետ՝ ընկ. Զ. Առաքելյան, պարտկազմակերպության քարտուղար՝ ընկ. Ա. Պապունչյան, պրոֆկազմակերպիչ՝ ընկ. Վ. Հովհաննիսյան), երկրորդ տեղը՝ Պ—5 ցեխը (ցեխի պետ՝ ընկ. Զ. Մարգարյան, պարտկազմակերպության քարտուղար՝ ընկ. Գ. Գրիգորյան, պրոֆկազմակերպիչ՝ ընկ. Վ. Հովհաննիսյան)։ Լավ են աշխատել ընկ. ընկ. Ժ. Ստեփանյանի, Տ. Խաչատրյանի, Ա. Հարությունյանի բրիգադաները, որոնք չորս ամսվա պլանը կատարել են 111—122 տոկոսով։

Ալյումինի գործարանը չորս ամսվա պլանը կատարել է 100,7 տոկոսով։

Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատը համախառն արտադրանքի պլանը 1957 թվականի չորս ամսում կատարել է 101,9 տոկոսով և պլանից դուրս արտադրել 27,4 հազար մետր գործվածք։ 1957 թվականի առաջին եռամսյակում պլանը տեխնիկա-

տնտեսական բոլոր ցուցանիշներով կատարելու և գերակատարելու համար կոմբինատի կոլեկտիվին Համամիութենական սոցիալիստական մրցության մեջ շնորհվեց երրորդ մրցանակը։

Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի պանծալի տարեդարձը արժանավայել կերպով դիմավորելու համար ստեղծագործական աշխատանքի են լծվել ռեսպուբլիկայի բոլոր ձեռնարկությունների կոլեկտիվները, որոնցից շատերը կատարում ու գերակատարում են իրենց ստանձնած պարտավորությունները։

---



# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑԸ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՆՅՈՒԹԱԿԱՆ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ԲԱՐԵԼԱՎՄԱՆ ՄԱՍԻՆ

*Վ. ՆՈՐՅԱՆ*

*Մեր Հայրենիքի բազմազգ ժողովուրդները մեծ խանդավառությամբ պատրաստվում են արժանավայել նշելու Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձը։ Նրանք իրենց ուժն ու ստեղծագործ աշխատանքը ի սպաս են դրել այն վեհ նպատակին, դեպի որն առաջնորդում է Կոմունիստական մեծագործ պարտիան։*

*Օրըստօրե բարգավաճում և ամրապնդվում է մեր հզոր սովետական Հայրենիքը։ Նրա անծայրածիր տարածություններում սովետական մարդիկ կոփում են կոմունիզմի հաղթանակը։ Սոցիալիստական շինարարության տարիները նշանավորվեցին ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում և ժողովրդի նյութական բարեկեցության վերելքի գործում ձեռք բերած վիթխարի հաջողու-*

թյուններով։ Այդ հաջողությունների մասին ամկնդիրների հետ սիստեմատիկաբար հեռաքրքիր և բովանդակալից զրույցներ է անցկացնում Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի մանարան ֆաբրիկայի ագիտատոր Հր. Գևորգյանը։ Օրերս նա մանող ցեխի աշխատողների հետ զրույց ունեցավ աշխատավորների նյութական բարեկեցության բարելավման մասին։

— Անմահ Վ. Ի. Լենինի գլխավորած Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ — ասաց նա,— 1917 թվականին կատարվեց առաջին սոցիալիստական ռևոլյուցիան։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո անցած ժամանակաշրջանում սովետական ժողովուրդը ձեռք բերեց համաշխարհային, պատմական նվաճումներ։ Աշխարհի գլխավոր կապիտալիստական երկրների համար ավելի քան հարյուր տարի պահանջվեց, որ ստեղծեին իրենց խոշոր արդյունաբերությունը։ Մինչդեռ ՍՍՌՄ-ում խոշոր, տեխնիկապես առաջնակարգ արդյունաբերություն և կոլտնտեսային հզոր տնտեսություն ստեղծվեց շատ կարճ ժամկետում։

1957 թվականին ՍՍՌՄ արդյունաբերությունը, նախառևոլյուցիոն ժամանակի հա-



մեմատությամբ, աճել է ավելի քան 30 անգամ, իսկ ամբողջ սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման հիմքը կազմող ծանր ինդուստրիան՝ ավելի քան 50 անգամ։

Կոլտնտեսային կարգի հաղթանակը ապահովեց գյուղատնտեսության հզոր վերելքը։ Սոցիալիստական էկոնոմիկայի աճի հետ մեկտեղ կատարվեց կուլտուրական ռևոլյուցիա։ Գործազրկությունն ու աղքատությունը անցան պատմության գիրկը։ Այդ հաջողությունների հիման վրա աննախընթաց կերպով բարձրացավ քաղաքի և գյուղի աշխատավորների կենսամակարդակը։

Այնուհետև ագիտատորը հանգամանորեն խոսեց պարտիայի 20-րդ համագումարից հետո ձեռք բերված հաջողությունների մասին։ Սովետական ժողովուրդը,—ասաց նա, —իրագործելով ՍՄԿՊ 20-րդ համագումարի որոշումները, խոշոր առաջընթաց քայլ է կատարել կոմունիստական շինարարության գործում։ Սոցիալիստական արդյունաբերությունը գերակատարեց 1956 թվականի համար սահմանված պլանը, 1955 թվականի համեմատությամբ արտադրության ծավալն ավելացնելով գրեթե 11 տոկոսով, սպառման առարկաների արտադրությունը՝ 9,4 տոկոսով։

Մեզ, սովետական քաղաքացիներիս,—շարունակում է ագիտատորը,—առանձնապես ուրախացնում են գյուղատնտեսության հաջողությունները։ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը հիանալի արդյունքների հասավ խամ ու խոպան հողերի յուրացման գործում։ Եթե անցած տարիներին մեծ նվաճում էր համարվում 2—2,5 միլիարդ փութ հացահատիկ մթերելը, ապա 1956 թվականին երկրում մթերվեց ավելի քան 3,3 միլիարդ փութ հացահատիկ։ Դրանով մեր կառավարությունը հնարավորություն ունեցավ ոչ միայն ապահովել հացահատիկի ասպարեզում երկրի ընթացիկ պահանջմունքները, այլև հսկայական պաշար կուտակեց։

Եզրակացությունը պարզ է. արդյունաբերության և գյուղատնտեսության բնագավառներում ձեռք բերած հաջողությունների հիման վրա է՛լ ավելի բարեկեցիկ են ապրում մեր սոցիալիստական քաղաքների և գյուղերի աշխատավորները։

ՏԵՂԻՑ ՁԱՅՆ.—Սակայն մեր հաջողությունները դուր չեն գալիս ամերիկյան միլիտարիստներին։

ԱԳԻՏԱՏՈՐ—Իմպերիալիստների համար անցանկալի են մեր հաջողությունները։ Նր-



րանք տանել չեն կարող, որ մեր բանվորները, կոլտնտեսականները, ինտելիգենցիան իսկական կյանք են կառուցում, առանց կապիտալիստների։ Ահա, որն է պատճառը, որ նրանք ամեն քայլափոխում ստում են, կեղծում իրականությունը, զրպարտում մեզ։ Բայց ինչպես ժողովուրդն է ասում. «Ճշմարտությունը արև է, որին ափով չես ծածկի»։

Մեր երկրում հսկայական աշխատանք է կատարված սովետական ժողովրդի բարեկեցության և կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման համար։ Մենք լավ գիտենք, թե ինչպես պարտիայի 20-րդ համագումարից հետո, Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը մի շարք կարևորագույն միջոցառումներ իրականացրին ժողովրդի կյանքի նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի հետագա բարձրացման ուղղությամբ։ Ձեզ հայտնի է, որ անցյալ տարվա հոկտեմբերի 1-ից գործողության մեջ դրվեց պետական կենսաթոշակների բարձրացման մասին օրենքը, աշխատանքային օրը երկու ժամով կրճատվեց նախահանգստյան և նախատոնական օրերին, երկարացվեց կանանց հղիության և ծննդաբերության արձակուրդները, վեցժամյա աշխատանքային օր սահմանվեց

դեռահասների համար։ Վերացված է դպրոցների և բարձրագույն ուսումնական հաստատությունների ուսման վարձը։

Բացի այդ, ազգային եկամտի աճմամբ հնարավորություն ստեղծվեց ավելացնել բանվորների, ծառայողների ու կոլտնտեսականների եկամուտները։ Բանվորների, ծառայողների միջին աշխատավարձը 1955 թվականի համեմատությամբ ավելացավ 3 տոկոսով, իսկ նրանց կենսաթոշակներն ու նպաստները մեկ տարում ավելացան 19 տոկոսով։

Վիթխարի են մեր նվաճումները նաև ժողովրդական կրթության, գիտական աշխատողներ պատրաստելու, բնակչությանը բժշկական օգնություն ցույց տալու, կուլտ-կենցաղային օբյեկտների կառուցման բնագավառներում։ Անցյալ տարի, նախորդ տարվա համեմատությամբ, հիվանդանոցային մահճակալների քանակն աճեց ավելի քան 64 հազարով, մշտական մսուրների քանակը՝ 50 հազարով։ Երկրում այժմ կա ավելի քան 400 հազար գրադարան, որոնք ունեն մոտ 15 միլիարդ օրինակ գիրք։

Անցյալ տարի կառուցվեց և շահագործման հանձնվեց 36 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ։



Իսկ գյուղերում կառուցվեց 700 հազար բնակելի տուն։

Սովետական Միության ձեռք բերած հաջողությունների հետ միասին ագիտատորը պատմում է նաև մեր ռեսպուբլիկայի, ինչպես նաև Լենինականի աշխատավորների ձեռք բերած հաջողությունների մասին։

Սովետական Միության մեծ ընտանիքում. —ասում է նա,—իր պատվավոր տեղն ունի հայ ժողովուրդը, որի զավակներն ու դուստրերը սերտորեն համախմբված Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության շուրջը, ստեղծագործ աշխատանք են կատարում։

Մեր Լենինականը անճանաչելի է դարձել։ Նրա բնակիչներն ապրում են բարեկեցիկ և ստեղծագործ կյանքով։

Վերջին երկու տարում Լենինականում կապիտալ շինարարության վրա ծախսվել է 57 միլիոն 760 հազար ռուբլի, որից 15 միլիոնը՝ բնակարանային շինարարության վրա։ Միայն քաղաքային Սովետի գծով բնակարանային շինարարության վրա ծախսվել է 4 միլիոն 284 հզար ռուբլի։ Այդ գումարներով կառուցվել և շահագործման է հանձնվել շուրջ 10 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։ Բանվոր-ծառայողների հա-

մար բնակելի շենքեր են կառուցել և շարունակում են կառուցել տեքստիլ կոմբինատի և գուլպա-տրիկոտաժի ֆաբրիկաները, երկաթուղային հանգույցի ձեռնարկությունները, հանքերի վարչությունը, մսի-պահածոների կոմբինատը, հեծանիվի գործարանը: Տեքստիլ կոմբինատում վերջերս շահագործման հանձնվեցին երեք նոր բնակելի տուն, որտեղ տեղավորվել են 143 տեքստիլագործների ընտանիքներ: Անհատական բնակարաններ կառուցելու նպատակով պետությունից վարկ են ստացել շուրջ 400 բանվոր-ծառայողներ: Նրանցից 320-ը արդեն ավարտել են իրենց բնակարանների շինարարությունը: Նոր բնակարաններում կան ռադիո-ընդունիչներ, դաշնամուրներ, նորաձև պահարաններ, սառցարաններ և այլ տնային կահկարասիներ: Մի քանի օր առաջ իրենց տնտեսած գումարներով դաշնամուրներ գնեցին ներկման-վերամշակման ֆաբրիկայի վերանորոգման բաժնի վարպետ Մ. Նահապետյանը, էլեկտրիկներ՝ Պ. Չախալյանը, Ս. Ավետիսյանը, Մանուկյանը և ուրիշներ:

Անցյալ տարի կոմբինատի 1060 բանվորներ ու բանվորուհիներ հանգստացել են սանատորիաներում և հանգստյան տներում:



Իսկ այս տարի ավելի մեծ թվով աշխատողներ կհանգստանան երկրի առողջարաններում: 1956 թվականին Միության լավագույն առողջարաններում անցկացրին իրենց արձակուրդը ձեզ բոլորիդ ծանոթ բանվոր-բանվորուհիներ Հ. Ավետիսյանը, Ս. Տյուտենյան և շատ ուրիշներ:

Ընկերներ, քանի որ մեր ֆաբրիկայում կան նաև հայրենադարձ տեքստիլագործներ, ես կամենում եմ խոսել նաև նրանց նկատմամբ Սովետական կառավարության կողմից ցույց տրված ջերմ հոգատարության մասին: Միայն անցյալ տարի հայրենադարձներին կառավարության կողմից զիջվել է 18 միլիոն 600 հազար ռուբլի վարկ, որ նրանք ստացել էին անհատական բնակարանային շինարարության համար: Միաժամանակ հայրենադարձներին տրված է 150 հազար ռուբլու չափով օգնություն: Հայրենադարձ Պ. Մարգարյանը, որը աշխատում է որպես շինարարական բրիգադիր, կառուցել է սեփական լավ բնակարան, որն ունի բոլոր հարմարությունները:

Քաղաքում բարձր զարգացման է հասել տրանսպորտը: Նախասովետական շրջանի երկու գնացքի փոխարեն, Լենինականից այժմ ամեն օր տարբեր ուղղություններով

մեկնում են բազմաթիվ գնացքներ։ Ուղևորների թիվը մեկ օրում 1000-ից ավելի է։ Քաղաքում զարկ է տրված նաև ավտոերթևեկությանը։ Ավտոբուսներով և այլ մեքենաներով քաղաքում օրական երթևեկում են շուրջ 30 հազար մարդ։ Վերջին շրջանում հսկայական միջոցներ հատկացվեցին կապի զարգացմանը։ Բացված են 13 փոստային նոր կետեր։ Միջին հաշվով քաղաքից օրական ուղարկվում է 13 հազար, իսկ Միության տարբեր վայրերից ստացվում է շուրջ 12 հազար նամակ։ Եվ դա այն ժամանակ, երբ նախկին Ալեքսանդրապոլում առաքվող և ստացվող նամակները մի քանի հարյուրից չէին անցնում։

Քաղաքն ունի 20 մասսայական դպրոց, 20 հազարից ավելի աշակերտներով։ Մինչդեռ 1919 թվականին Շիրակի ողջ գավառը ունեցել է շուրջ 1500 սովորող։

Հատուկ ուշադրություն է դարձվում բնակչության բուժսպասարկումը բարելավելուն։ 1919 թվականին քաղաքի բուժօգնության գործին հատկացված է եղել ընդամենը 3000 ռուբլի։ Մինչդեռ այս տարի օրական միջին հաշվով բնակչության բուժսպասարկման նպատակի համար ծախսվում է 50 հազար ռուբլուց ավելի։ Մինչև ռևոլյուցիան քաղա-



քում եղած 16 մահճակալանոց հիվանդանոցի դիմաց, այսօր Լենինականն ունի մի քանի հիվանդանոցներ՝ 1000-ից ավելի մահճակալներով։ Առբուժնի ցանցն ունի 1500 բուժաշխատող, որից մոտ 200-ը բժիշկներ են։

Միայն և միայն աշխատավորության գնողունակության բարձրացմամբ պետք է բացատրել բնակչությանը տրվող ապրանքների և մթերքների ֆոնդերի ավելացումը։ 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, Լենինականում ավելի է վաճառվել միս՝ 170 տոննա, յուղ՝ 190 տոննա, շաքար՝ 500 տոննա, բրինձ՝ 500 տոննա, բրդյա կտորեղեն՝ 2 միլիոն 250 հազար ռուբլու, մետաքսյա կտորեղեն 3 միլիոն ռուբլու։ Բացված են 8 նոր խանութ, 3 ճաշարան, 7 բուֆետ, 12 առևտրական կետ։

Պետական կենսաթոշակների վերաբերյալ նոր օրենքի համաձայն Լենինականում այժմ տարեկան տրվելու է մոտ 31 միլոն ռուբլու կենսաթոշակ, որը երկու անգամ ավելի է 1955 թվականին այդ նպատակի համար վճարած գումարից։ Գոհ և շնորհակալ Սովետական կառավարությունից, մեր ֆաբրիկայի աշխատողների մի մեծ խումբ ծերության թոշակ է ստանում։ Շատերի կենսաթոշակ-

ները ավելացել են 250—300 ռուբլու չափով։

Մեր երկրի ձեռք բերած նվաճումները, սովետական ժողովրդի քաղաքական և աշխատանքային աննախընթաց ակտիվությունը, նախաձեռնությունը և անսահման խանդավառությունը կրկին ու կրկին անգամ վկայում են տնտեսության սոցիալիստական սիստեմի չգերազանցված առավելությունների մասին։

Օրերս տեղի ունեցած ՍՍՌՄ Գերագույն Սովետի յոթերորդ սեսիայի ընդունած օրենքներում դրսևորված են սովետական ժողովրդի իղձերն ու ցանկությունները։ Արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումն է՛լ ավելի բարելավելու վերաբերյալ որոշումների կենսագործումը ավելի կամրապնդի մեր երկրի տնտեսական հզորությունը։

1957 թվականի ժողովրդա-տնտեսական պլանում և բյուջեում վառ արտացոլում է գտել Հայրենիքի բարգավաճման, նրա հզորության ամրապնդման և ժողովրդի բարեկեցության նկատմամբ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության հոգատարությունը։ 1957 թվականի բյուջեով նախատեսվում է խոշոր միջոցներ տրամադրել աշխատավորության կենսամակարդա-



կի բարձրացման նպատակին։ Սոցիալ-կուլտուրական ձեռնարկումների վրա կատարվող ծախսերը 1956 թվականի դիմաց կաճեն 24,5 միլիարդ ռուբլով և կկազմեն 188,2 միլիարդ ռուբլի։ Այս տարի պետական սոցիալական ապահովագրության ծախսերը կկազմեն 16,3 միլիարդ ռուբլի, կամ անցյալ տարվանից համարյա մեկ-երրորդով ավելի։

Միության մեջ նոր տնտեսական տարում զարկ է տրվելու բնակարանային շինարարությանը։ Նախատեսված է այս տարի պետական կապիտալ ներդրումների հաշվին, ինչպես նաև պետական վարկի օգնությամբ բնակչության միջոցներով կառուցել և շահագործման հանձնել 46 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ կամ 28 տոկոսով ավելի, քան 1956 թվականին։

Իսկ այնուհետև դրամական եկամուտների աճին համապատասխան պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառությունն անցյալ տարվա համեմատությամբ ավելացվելու է 57 միլիարդ ռուբլով։ Ապրանքաշրջանառության նման աճը վկայում է մեր ժողովրդի գնողունակության բարձրացման, սովետական կուլտուրական առևտրի արագ զարգացման մասին։

Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության դեպի ժողովուրդն ունեցած անդուլ հոգատարության շնորհիվ է՝ ավելի բարեկեցիկ կդառնա մեր երկրի աշխատավորների կյանքը։

Ագիտատորը զրույցի վերջում համառոտակի պատմեց այն մասին, թե ով ինչպես է կատարում Մեծ Հոկտեմբերի 40-ամյակի պատվին ստանձնած պարտավորությունները։

Ունկնդիրների հարցերին գոհացուցիչ պատասխան տալուց հետո, ավարտվեց զրույցը։

---



## ԴԵՊԻ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 40-ԱՄՅԱԿԸ

(Թվեր և փաստեր)

Համաժողովրդական տոնը՝ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակը աշխատանքային նոր հաջողություններով են դիմավորում մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսային աշխատավորները։ Ձեռք բերված հաջողությունները ամրապնդելու և առավել հաջողությունների հասնելու նպատակով այժմ նրանք մտել են Մեծ Հոկտեմբերի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ և ամեն ջանք գործ են դնում, որպեսզի երկրին ավելի շատ կենսամթերքներ տան և հաղթանակով դուրս գան մրցությունից։ Ահա թվեր ու փաստեր այդ մասին։

✪ 1956 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, ռեսպուբլիկայում ավելի արտադրվեց միս՝ 11 տոկոսով, կաթ՝ 31 տոկոսով, բուրդ՝ 15 տոկոսով, ձու՝ 24 տոկոսով։

✪ 1956 թվականին ռեսպուբլիկայում 100 հեկտար հողային տարածության դիմաց ստացվել է՝ միս 18,7 ցենտներ, կաթ՝ 160,9 ցենտներ, բուրդ 1,9 ցենտներ։

✪ Նույն թվականին մթերատու անասունների գլխաքանակն ավելացել է խոշոր եղջերավորներինը՝ 11 տոկոսով, այդ թվում կովերինը՝ 25 տոկոսով, ոչխարներինը՝ 15,4 տոկոսով։

✪ Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում մեկ կովի կաթնատվությունը 1956 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, ավելացել է 318 կիլոգրամով կամ 39,3 տոկոսով։

✪ Մեր ռեսպուբլիկայի բազմաթիվ կոլտնտեսություններ արդեն կատարել են 1956 թվականի համար նախատեսված 100 հեկտար հողային տարածության դիմաց անասնաբուծական մթերքների ստացման առաջադրանքները։ Օրինակ, Շահումյանի շրջանի 18-րդ պարտհամագումարի անվան կոլտնտեսությունը դեռ անցյալ տարի յուրաքանչյուր 100 հեկտար հողային տարածության դիմաց ստացել է 834 ցենտներ կաթ, իսկ նույն շրջանի Ստալինի անվան կոլտնտեսությունը՝ 640 ցենտներ կաթ։

✪ Այս տարի մեր ռեսպուբլիկայի բոլոր



կոլտնտեսություններում կաթի արտադրությունը նախատեսվում է հասցնել 260.800 տոննայի, անցյալ տարվա 229.000 տոննայի փոխարեն. մսինը (կենդանի քաշով)՝ 68 հազար 300 տոննայի, անցյալ տարվա 53.700 տոննայի փոխարեն, ձվինը՝ 131 միլիոն հատի, անցյալ տարվա 120 միլիոն հատի փոխարեն, բրդինը՝ 3.400 տոննայի։

✪ Մտնելով Մեծ Հոկտեմբերի 40-ամյակի պատվին ծավալված սոցմրցության մեջ մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները պարտավորություն են ստանձնել 1957 թվականին յուրաքանչյուր կովից ստանալ 1.350 կգ. կաթ, ամեն մի ոչխարից՝ 2,8 կգ. բուրդ, 100 կովից՝ 85 հորթ, 100 ոչխարից՝ 95 գառ և այլն։

✪ Ի պատիվ Մեծ Հոկտեմբերի, ռեսպուբլիկայի մի շարք առաջավոր կոլտնտեսություններ ավելի բարձր պարտավորություններ են ստանձնել։ Շահումյանի շրջանի Նոր Կողբ գյուղի Վորոշիլովի անվան կոլտնտեսությունը պարտավորվել է այս տարի 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրել 1050 ցենտներ կաթ և 115 ցենտներ միս։

✪ Հոկտեմբերյանի շրջանի Նորապատ գյուղի կոլտնտեսությունը պարտավորվել է

1957 թվականին 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրել 75 ցենտներ միս և 550 ցենտներ կաթ։

✪ Կալինինոյի շրջանի Մեդովկա գյուղի Կալինինի անվան կոլտնտեսությունը պարտավորվել է 1957 թվականին արտադրել 472 ցենտներ կաթ և 56 ցենտներ միս։

✪ Արտաշատի շրջանի Նորաշենի Աթարբեկյանի անվան կոլտնտեսությունը պարտավորվել է այս տարի խաղողի յուրաքանչյուր հեկտարից ստանալ 130 ցենտներ բերք, բամբակենու ամեն մի հեկտարից 40 ցենտներ, ամեն մի կովից 2000 կգ. կաթ և ամեն մի ոչխարից՝ 4 կգ. բուրդ։ Կոլտնտեսությունում ուժեղ թափով առաջ է գնում այգիների ու ցանքերի մշակությունը։

✪ Ստանձնած պարտավորությունները պատվով են կատարում ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները։ Շահումյանի շրջանի կոլտնտեսությունները մայիսի 1-ի տվյալներով կաթի արտադրության այս տարվա պլանը կատարել են 51,7 տոկոսով, յուրաքանչյուր կովից կթելով 1216 կգ. կաթ, Կալինինոյի շրջանը՝ 49,6 տոկոսով, յուրաքանչյուր կովից կթելով 1014 կգ. կաթ, Ստեփանավանի շրջանը՝ 46,6 տոկոսով, յուրաքանչյուր կովից կթելով 693 կգ. կաթ, Էջմիած-



նի շրջանը՝ 45,9 տոկոսով, յուրաքանչյուր կովից կթելով 828 կգ. կաթ և այլն։

✪ Թալինի շրջանի Սաբունչի գյուղի կոլտնտեսականներն անընդհատ բարելավում են հացահատիկային կուլտուրաների ցանքերը։ Նրանք պարարտանյութերով սնուցում են ցանքերը և այն մաքրում քարերից ու մոլախոտերից։ Մի քանի օրվա ընթացքում կոլտնտեսականները 80 հեկտար ցանքերից մաքրել են քարերը և այն նախապատրաստել կոմբայնի աշխատանքի համար։

✪ Ապարանի շրջանի Զովունի գյուղի կոլտնտեսականները ավարտել են հացահատիկային կուլտուրաների ցանքերի սնուցման աշխատանքները, շուտով կավարտեն քաղհանը։ Կոլտնտեսականների մի մասը հացահատիկի ցանքերը մաքրում է քարերից։

✪ Անցյալ տարվա համեմատությամբ, այս տարի Նոր Բայազետի շրջանում 15 օր շուտ ավարտվեց գարնանացանի աշխատանքները։ Կոլտնտեսություններում ցանված է բացառապես կոնդիցիոն սերմ։ Ցանքերի զգալի մասը պարարտացված է։

✪ Էջմիածնի շրջանի մեխանիզատորները կատարելով իրենց խոստումը, ժամանակին և բարձր ցուցանիշներով ավարտեցին գարնանավարի և գարնանացանի աշխատանքները։

# ԱՇԽԱՐՀԻ ԱՄԵՆԱԽՈՇՈՐ ՋՐԱՆՑՔՆԵՐԸ

## ՍՈՒԵԶԻ ՋՐԱՆՑՔԸ

Սուեզի ջրանցքը բացվել է 1869 թվականին։ Նրա երկարությունը հավասար է 161 կիլոմետրի։ Այն Միջերկրական ծովը միացնում է Կարմիր ծովի, իսկ այնուհետև Հնդկական օվկիանոսի հետ։ Ջրանցքի կառուցման աշխատանքները տևել են 10 տարի՝ 1859—1869 թ. թ.։ Սուեզի ջրանցքը ունի միջազգային խոշոր նշանակություն։ Նրա ամբողջ տրասսան անցնում է Սուեզի անապատային պարանոցով։

Ջրանցքի մակերեսի լայնությունը հավասար է 120—150 մետրի, հատակի լայնությունը՝ 45—60 մետրի, խորությունը՝ 12—13 մետրի։ Մոտ 100 կիլոմետր երկարությամբ ջրանցքը իր ճանապարհին անցնում է մի շարք լճերով։

Սուեզի ջրանցքը միակն է, որ ամբարտակներ չունի։ Նավարկությունը կատարվում է կլոր տարին։ Ջրանցքի երկարությամբ անցնում են խճուղային և երկաթուղային ճանապարհներ։ Ջրանցքի բացման հետևանքով Եվրոպայի նավահանգիստներից Հնդկական և Խաղաղ օվկիանոսների նավահանգիստները տանող ջրային ուղիները կրճատվել են 8-ից մինչև 15



հազար կիլոմետրով։ Միայն 1954 թվականին ջրանցքով անցել են 13.215 նավ, որոնք փոխադրել են 96 միլիոն 800 հազար տոննա բեռ։

Սուեզի ջրանցքը անցնում է Եգիպտոսի տերիտորիայով և ներկայումս հանդիսանում է նրա սեփականությունը։

## ՊԱՆԱՄԱՅԻ ՋՐԱՆՑՔԸ

Պանամայի ջրանցքը բացվել է 1914 թվականին։ Նա ամենակարճ ջրանցքն է, որի երկարությունը հավասար է 81 կիլոմետր և 600 մետրի։ Ջրանցքի կառուցումը տևել է 35 տարի։ Նրա լայնությունը ամենանեղ տեղում հավասար է 91,5 մետրի, խորությունը՝ 12,5 մետրի։ Ջրանցքի վրա կառուցված է վեց ամբարտակ։ Օրվա ընթացքում ջրանցքը կարող է բաց թողնել 48 նավ կամ տարվա ընթացքում մոտ 17 հազար նավ։ Նրանով նավերի անցման միջին տևողությունը 8—11 ժամ է։

Այս ջրանցքը, որը գտնվում է Կենտրոնական Ամերիկայում, երկու մայր ցամաքները՝ Հյուսիսային Ամերիկան բաժանում է Հարավային Ամերիկայից և միացնում է Խաղաղ օվկիանոսը Ատլանտյան օվկիանոսի հետ։ ԱՄՆ-ի ծովային ճանապարհը Նյու-Յորքից դեպի Սան-Ֆրանցիսկո, շնորհիվ Պանամայի ջրանցքի, կրճատվել է 25,9 հազար կիլոմետրից մինչև 10 հազար կիլոմետրի։

Ջրանցքը գտնվում է ԱՄՆ-ի իրավասության տակ։

### ՍՊԻՏԱԿ-ԲԱԼԹԻԿ ԾՈՎ ՋՐԱՆՑՔԸ

1933 թվականին ավարտվել է Սովետական Միության առաջին խոշոր ջրանցքի՝ Սպիտակ-Բալթիկ ծով ջրանցքի կառուցումը։ Նրա երկարությունը հավասար է 227 կիլոմետրի։ Կառուցումը տևել է մեկ տարի 8 ամիս։ Ջրանցքը անցնում է Լադոգա և Օնեգա լճերի միջով և Սպիտակ ծովը միացնում է Բալթիկ ծովի հետ։ Մեծ է ջրանցքի տնտեսական նշանակությունը։ Նա նավերին հնարավորություն է տալիս կարճ ճանապարհով Սպիտակ ծովից անցնել Լենինգրադ և Բալթիական ծովի մյուս նավահանգիստները։ Ջրանցքով տեղափոխվում է գլխավորապես անտառանյութ և շինանյութ։ Նա գրավում է շատ տուրիստներ։

### ՎՈԼԳԱ-ԴՈՆ ՋՐԱՆՑՔԸ

1952 թվականին շահագործման է հանձնվել Վ. Ի. Լենինի անվան Վոլգա-Դոն ջրանցքը։ Նրա կառուցումը տևել է 4 տարի, երկարությունը 101 կիլոմետր է։ Ջրանցքը Սովետական Միության եվրոպական մասի երկու խոշոր գետերը՝ Վոլգան և Դոնը միացնում է միմյանց և նրանց միջոցով Սև և Կասպից ծովերը։ Այսպիսով Բալթիկ, Սպիտակ, Կասպից, Սև ու Ազովի ծովերի միացման հետևանքով Սովետական Միության մայրաքաղաք Մոսկվան դարձել է հինգ ծովերի նավահանգիստ։ Ջրանցքի վրա կառուցված են 9 խոշոր ամբարտակներ։ Երկու գետերի միջև ընկած հարթա-



վայրերում ստեղծվել են մի շարք ջրամբարներ՝ ոռոգման նպատակներով։

### ՍՏԻԼՈՖՈՏ

Այս նոր ֆոտոապարատի անունը, որը բաց է թողնվում Ֆրանսիայում, ծագում է «ստիլո»—այսինքն գրիչ, և «ֆոտո» խոսքերից։ Իրականում, ապարատը ըստ իր ձևի և մեծության նման է ինքնահոս գրչի։ Ֆոտոապարատի խցիկը լիցքավորվում է 16 միլիմետրանոց սովորական կամ գունավոր կինոժապավենով, 18 կադրի համար։ Օբյեկտիվի լուսային ուժն է՝ 1:6,3։ Շնորհիվ ֆոկուսային շատ կարճ տարածության նկարը ստացվում է կտրուկ և նկարահանման ժամանակ ֆոկուսի ուղղում չի պահանջվում։

Ֆոտոապարատի փոքր չափերը և հարմար ձևը հնարավորություն է տալիս տիրոջը այն միշտ կրել իր հետ։

### ԶԱՐԹՆԵՑՆՈՂ ԺԱՄԱՑՈՒՅՑ ԽՈՒԼԵՐԻ ՀԱՄԱՐ

Թույլ և բոլորովին լսողություն չունեցող մարդիկ կարիք են զգում զարթեցուցիչ ժամացույցի այնպես, ինչպես նորմալ լսողություն ունեցող մարդիկ։ Սակայն մինչև այժմ նրանք զրկված են եղել այդպիսի հնարավորությունից։ Ներկայումս ստեղծվել է մի առանձին զարթեցուցիչ, որը կարող է զարթեցնել միանգամայն խուլ մարդուն։ Դա ունի ձեռքի ժամացույցի տեսք, իսկ նրա մուրճիկը խփում է ոչ թե




զանգին, այլ ժամացույցի [illegible] տատուկ շարժվող կափարիչին։ Կափարիչն էլ իր հերթին խփում է ժամացույցի տիրոջ ձեռքին և զարթեցնում նրան։

Անհրաժեշտ է նշել, որ այդպիսի զարթեցուցիչ ժամացույցը կարող է պիտանի լինել նաև նորմալ լսողություն ունեցող մարդկանց, մանավանդ երբ հարկավոր է զարթնեցնել որևէ մեկին, առանց անհանգստացնելու այդ նույն սենյակում մյուս բնակիչներին։

## ՀԱԳՈՒՍՏ ԹՂԹԻՑ

Վերջացնելով աշխատանքային օրը, բանվորները հանում են իրենց վրայից ձյունի պես սպիտակ արտահագուստները և... դեն նետում։ Այո, պարզապես դեն նետում և ոչ թե տալիս լվանալու։ Հարցը նրանումն է, որ այդ արտահագուստները ավելի էժան են, քան բամբակե գործվածքեղենը լվանալ տալը, չէ որ դրանք թղթից են։

Այդ Կ—2000 մարկայի թուղթը, որը արտադրվում է Նյու քաղաքի (ԱՄՆ) թղթի գործարանում, նման չէ սովորական գրելու կամ փաթաթելու թղթին։ Նա ամուր է, փափուկ և շոշափելիս հիշեցնում է բամբակե գործվածքին։ Բացի դրանից, նա շատ բազմատեսակ է։ Կան այնպիսինները, որոնք նման են բրդին՝ ձմեռային արտահագուստներ կարելու համար։ Այդ թղթին կարող ես տալ ուզածդ գույնը, այն նաև անջրանցիկ է և կրակին դիմացկուն։

Թուղթը հեշտությամբ ձևվում է։ Նրանից պատրաստած հագուստը կարում են մեքենայով, կամ կպցնում ջրադիմացկուն սոսնձով։

---

## СОДЕРЖАНИЕ



---

Խմբագիր՝ Վ. ԲՋՆՈՒՆԻ

Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 11 1957 г.

ՎՖ 06833 Պատվեր 458 Տիրաժ 8.600

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանց № 8։

Գինը 50 կոպ.։